# ԱԳԻՏԱՏՈՐԻ
## ԲԼՈԿՆՈՏ





ՕԳՈՍՏՈՍ

15

1964

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



## СОДЕРЖАНИЕ




**Խմբագրության հասցեն.**— *Երևան, ՀԿՊ կենտկոմ, II հարկ, 71-րդ սենյակ, հեռախոս 2—52—78*

**Адрес редакции** — Ереван, ЦК КП Армении, II этаж, ком. 71, телефон 2-52-78.



Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 15
ՕԳՈՍՏՈՍ
1964

ՀԿՊ կենտկոմի գաղափարական աշխատանքի բաժին

Լույս է տեսնում ամիսը երկու անգամ


ՉԻՆԱԿԱՆ ՂԵԿԱՎԱՐՆԵՐԻ ՍԽԱԼՆԵՐԻ ՄԱՍԻՆ, ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## ԲԱՆՎՈՐ ԴԱՍԱԿԱՐԳԻ ՊԱՐՏԻԱՅԻՑ ԴԵՊԻ ԱՄԲՈՂՋ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՐՏԻԱ*)

*Մեր երկրում կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանում կային բանվոր դասակարգին թշնամի գաղափարախոսության տեր դասակարգեր ու սոցիալական խավեր, կային այնպիսի խավեր, որոնք տատանվում էին սոցիալիզմի ու կապիտալիզմի, բանվոր դասակարգի և բուրժուազիայի միջև։ Այն ժամանակ պարտիան պրոլետարիատի դասակարգային դիրքերի մարմնավորումն էր և հաստատակամ, երկարատև ու բարդ պայքար մղեց, որպեսզի բանվոր դասակարգի դիրքերը ներգրավի սկզբում ժողովրդի մեծամասնությանը, իսկ այնուհետև ամբողջ ժողովրդին։ Այն տեսական եզրակացությունը, որ այժմ մեր պարտիան դարձել է ամբողջ ժողովրդի պարտիա, հենց հանդիսանում է այն ռեալ փաստի ընդունումը, որ այդ պայքարն ավարտվել է լիակատար հաղթանակով։*

*Սովետական ժողովրդի բոլոր աշխատավորական խավերը՝ գյուղացիությունը, նախկին արհեստավորները, աշխատավոր ինտելիգենցիան, աստիճանաբար անցել են բանվոր դասակարգի դիրքերը, հասկացել են բանվոր դասակարգի շահերի հետ իրենց շահերի խոր և արմատական ընդհանրությունը, շահեր, որոնք առավել լրիվ կերպով են արտահայտվել պարտիայի կողմից։ Սոցիալիզմի հաղթանակի համար մղված պայքարի ըն-*

* *Սկիզբը՝ «Ա. Բ.»-ի 14-րդ համարում։*

թացքում ամբողջ սովետական ժողովուրդն սկսեց կոմունիստական պարտիայի քաղաքականությունը դիտել որպես իր սեփական քաղաքականությունը, ընդունեց պարտիայի ղեկավարությունը և նրա մեջ գտավ բոլոր աշխատավորների ընդհանուր շահերի միակ արտահայտչին։ Ուստի բանվոր դասակարգի պարտիան դարձավ ամբողջ ժողովրդի պարտիան։

Մեր պարտիան խորապես ժողովրդական է իր նպատակներով, իր քաղաքականությամբ, որն ուղղված է այդ նպատակների իրականացմանը, իր կազմով, որը ներկայացված է սովետական հասարակության բոլոր սոցիալական խավերի՝ բանվոր դասակարգի, գյուղացիության, ինտելիգենցիայի լավագույն մարդկանցով։ Վերջնական նպատակով՝ կոմունիստական հասարակարգի կառուցմամբ շահագրգռված է ամբողջ սովետական ժողովուրդը, և այդ է պարտիայի՝ կոմունիզմի կառուցման կազմակերպչի ու ղեկավարի համաժողովրդական բնույթի ամենախոր հիմքը։

Պարտիայի համաժողովրդական բնույթին համապատասխանում են նաև նրա գործունեության դեմոկրատական մեթոդները։ ՍՄԿՊ-ի ղեկավարությունը հենվում է պարտիայի բարոյական հեղինակության վրա, ժողովրդի ամենալայն խավերի կողմից նրա քաղաքականության ու ղեկավարման ճշտությունն ընդունելու վրա։ Մեր զարգացման կարևորագույն տնտեսական ու քաղաքական պրոբլեմները քննարկելիս պարտիան դիմում է ժողովրդին, հենվում է նրա կոլեկտիվ մտքի վրա։ «Մեր ուժը հենց նրանումն է,— ասել է Ն. Ս. Խրուշչովը,— որ պարտիայի գործողությունները միանում են ամբողջ ժողովրդի գործողություններին, որ անպարտիական աշխատավորներն անմիջականորեն, կողք-կողքի աշխատում են պարտիայի անդամների հետ»։

Նոր ծրագիրն արձանագրեց այն, ինչ արդեն կյանքում ստեղծվել է, իսկ այսուհետև ավելի լայնորեն ու բազմակողմանիորեն է դրսևորվել։ Սոցիալիզմին թշնամի դասակարգերի և սոցիալական խավերի բացակայության, հետևաբար նաև սովետական հասարակության ներսում դասակարգերի միջև պայքարի բացակայության, սովետական պետության համաժողովրդական բնույթի մասին, ՍՄԿՊ-ի՝ որպես ամբողջ ժողովրդի պարտիայի մասին եզրակացությունները վերացական ֆորմուլաներ չեն։ Դրանց ետևը կանգնած են մեր հասա-








րակության կյանքը, պարտիայի ռեալ քաղաքականությունը, որը համապատասխանում է նոր պատմական փուլին և ուղղված է այն նպատակին, որ կոմունիզմի կառուցմանն ու հասարակության գործերի կառավարմանը ներգրավվի ամբողջ հասարակությունը, բարձրանա նրա ակտիվությունը, ընդլայնվի սոցիալիստական դեմոկրատիան։

Մարքսիզմ-լենինիզմը ՍՄԿՊ-ի վերաճումը ամբողջ ժողովրդի պարտիայի ամենևին էլ չի դիտում որպես միանվագ ակտ, այլ այդպիսի վերափոխումը համարում է մի պրոցես, որն արդեն վաղուց է սկսվել և պահանջում է ավելի կատարելագործել պարտիական ղեկավարման մեթոդները, պարտիան ավելի մոտեցնել ժողովրդին։ Պարտիան անցյալում եղել է մեկ դասակարգի պարտիա, ներկայումս նա ամբողջ ժողովրդի պարտիան է, իսկ ապագայում աստիճանաբար կզարգանա և կդառնա հասուն կոմունիզմի հասարակական կազմակերպության նոր տիպ։

Տեսականորեն կարելի է ենթադրել, որ կոմունիստական պարտիան, որպես քաղաքական կազմակերպություն, միշտ չէ, որ գոյություն կունենա. զարգացած կոմունիստական հասարակարգի կառուցմամբ կվերանա նրա անհրաժեշտությունը։ Բայց նա կմնա որպես հասարակական կազմակերպություն, որն անհրաժեշտ կլինի հասարակության կյանքը կառավարելու համար։ Լենինյան այս գաղափարն արտահայտված է Կոմինտերնի II կոնգրեսի կարևորագույն փաստաթղթի՝ «Կոմունիստական պարտիայի դերը պրոլետարական ռևոլյուցիայում» բանաձևի մեջ։ Այդտեղ առաջ է քաշված այն տեսական ենթադրությունը, թե հնարավոր է, որ կոմունիզմի վերջնական հաղթանակի ճանապարհին երեք հիմնական կազմակերպությունները՝ սովետները, արհմիությունները և պարտիան աստիճանաբար դառնան միասնական տիպի կազմակերպություն։ Այժմ դեռ դժվար է ասել, թե գործնականորեն ինչպես տեղի կունենա այդ պրոցեսը, բայց Լենինի կողմից տրված տեսական ուղղությունն արդեն հաստատվում է կյանքով։

Այս է կոմունիստական պարտիայի զարգացման ռեալ դիալեկտիկան և, բնական է, ՍՄԿՊ XXII համագումարի նյութերում հիմնավորված եզրակացությունները լիովին ըմբռնել են ամբողջ աշխարհի մարքսիստ-լենինյանները։ Դրանք ընդունել են բոլորը, ովքեր հասարական

կյանքի երևույթների ուսումնասիրման ժամանակ ղեկավարվում են մարքսիստական-լենինյան մեթոդով, որը պետք է «հաշվի առնի կենդանի կյանքը, իրականության ճշգրիտ փաստերը, և ոչ թե շարունակի կառչել երեկվա թեորիային, որը, ինչպես և ամեն մի թեորիա, լավագույն դեպքում միայն նշում է հիմնականը, ընդհանուրը, միայն մոտենում է կյանքի բարդությունն ընդգրկելուն» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 24, էջ 33)։

## Չինական տեսաբանների գլխավոր «փաստարկը»

Այն, ինչ ակներև է դիալեկտիկայի օրենքները ոչ միայն խոսքով ընդունող, այլև հասարակական երևույթների վերլուծության ժամանակ դրանցով ղեկավարվելու ձգտող յուրաքանչյուր մարքսիստ-լենինյանի համար, խիստ առարկություն է առաջացնում չինական ղեկավարների կողմից։

Չինական ղեկավարները չեն շոշափում պարտիայի զարգացման տեսական պրոբլեմները, նրանք, ինչպես երևում է, չեն ցանկանում դրսևորել իրենց բացահայտ նահանջը հիմնական կամ, ինչպես իրենք են սիրում ասել, «համընդհանուր», մարքսիստական ճշմարտություններից։ Որպես ՍՄԿՊ ծրագրի դեմ իրենց հարձակումների ելակետային նախադրյալ չինական «տեսաբաններն» առաջ են քաշում մեկ դրույթ «ընդհուպ մինչև կոմունիստական հասարակարգի բարձրագույն փուլը թևակոխելը անխուսափելի է պրոլետարիատի դիկտատուրայի մշտական գոյությունը»։ Նրանք պնդում են, թե «պրոլետարիատի դիկտատուրայի մահացումը հենց պետության մահացումն է», բայց քանի որ գոյություն ունի պրոլետարիատի դիկտատուրան, ապա պարտիան էլ պետք է լինի պրոլետարական։ Ըստ որում, ամենևին էլ չամաչելով, չինական պարագլուխներն իրենց պնդումները վերագրում են Մարքսին ու Լենինին և նրանց «պաշտպանում են» «ժամանակակից ռևիզիոնիստներից»։ Տեսնենք, սակայն, թե պետության ու պարտիայի մասին մարքսիստական-լենինյան ուսմունքն ումից պետք է պաշտպանել։

Արդյոք ո՞չ նրանցից, ովքեր տարբերություն չեն տեսնում բուրժուական պետության, կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ժամանակաշրջանի պետության և հասունացած սոցիալիստական հասարակարգի պետության միջև, որն իրականացնում է անցումը դեպի





կոմունիզմի բարձրագույն փուլը։ Արդյոք ո՞չ նրանցից, ովքեր բոլոր ժամանակաշրջանների ու փուլերի համար միևնույն ֆորմուլաներն ունեն։

Չինական ղեկավարները կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ժամանակաշրջանի օրինաչափությունները գիտակցաբար փոխադրում են սոցիալիստական հասարակարգ։ Նրանք իրենց հոդվածներում մեջբերումներ են կատարում Մարքսի, Էնգելսի, Լենինի միայն այն աշխատություններից, որոնցում կոմունիզմը որպես հասարակական-տնտեսական ֆորմացիա դիտվում է ամբողջությամբ վերցրած, չնայած մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրների աշխատությունները բարեխղճորեն կարդացած բոլոր մարդկանց քաջ հայտնի է, որ նրանք հստակորեն տարբերել են այդ ֆորմացիայի փուլերը. առաջինը՝ սոցիալիզմ և բարձրագույնը՝ լիակատար կոմունիզմ։

«Գոթայի ծրագրի քննադատության» մեջ Կ։ Մարքսը գրել է. «Կապիտալիստական և կոմունիստական հասարակության միջև ընկնում է մի շրջան, երբ առաջինը ռևոլյուցիոն ձևով փոխակերպվում է երկրորդին։ Այդ շրջանին համապատասխանում է նաև քաղաքական անցման մի քաղաքական շրջան և այդ շրջանի պետությունն ուրիշ ոչինչ չի կարող լինել, բացի պրոլետարիատի ռևոլյուցիոն դիկտատուրայից» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հատ. II, էջ 30, Հայպետհրատ, 1950)։

Համաժողովրդական պետության վերաբերյալ ՍՄԿՊ ծրագրի դրույթը «հերքելու» համար որպես տեսական բազա օգտագործվում է Մարքսի դատողությունների ամբողջ ընթացքից պոկված հենց այդ ցիտատը։ Զարմանալի չէ, որ խզելով Մարքսի միտքը, պեկինցի պրոպագանդիստները ոչ մի տեղ ցույց չեն տալիս նույն աշխատության հաջորդ երկու տողերը, որտեղ Գոթայի ծրագրի մասին ասված է. «Սակայն ծրագիրը չի զբաղվում ո՛չ այդ վերջինով (այսինքն՝ պրոլետարիատի դիկտատուրայով— ԽՄԲ.), ո՛չ էլ կոմունիստական հասարակարգի ապագա պետականությամբ»։*

Ըստ չինական «տեսաբանների» տրամաբանության, այդ մտքի համար Մարքսին հարկավոր է հայտարարել հակամարքսիստ։ Իսկապես, ի՞նչ պետականության մասին կարող է խոսք լինել պրոլետարիատի դիկտա-

* Ընդգծումը մերն է— ԽՄԲ.

տուրայից հետո, որի մահացումը, չինական տեսաբանների կարծիքով, նշանակում է առհասարակ պետականության մահացում։ Դա ի՞նչ «կոմունիստական պետականություն է», եթե կոմունիզմը հասարակարգ է առանց պետության։

«Չինականացված մարքսիստները» ոչ մի կերպ չեն ցանկանում համաձայնել այն բանի հետ, որ, խոսելով կապիտալիզմից կոմունիզմին անցնելու ժամանակաշրջանի մասին, Մարքսը նկատի ուներ կոմունիզմի առաջին փուլը՝ սոցիալիզմը։ Նրանք լռության են մատնում և այն, որ Լենինը «Պետություն և ռևոլյուցիա» և այլ աշխատությունների մեջ, հանգամանորեն ընդհանրացնելով պետության մասին Մարքսի և Էնգելսի բոլոր ասույթները, հանգել է հետևյալ եզրակացության. «Այն, ինչ որ սովորաբար սոցիալիզմ են անվանում, Մարքսն անվանել է կոմունիստական հասարակության «առաջին» կամ ստորին փուլ։ Որչափով ընդհանուր սեփականություն են դառնում արտադրության միջոցները, այդ չափով այստեղ էլ կարելի է «կոմունիզմ» բառը գործածել, եթե չմոռանանք, որ այդ լիակատար կոմունիզմ չէ» (Երկեր, հատ. 25, էջ 613)։

Վ. Ի. Լենինը հստակորեն սահմանել է պրոլետարիատի դիկտատուրայի՝ որպես կապիտալիզմի լիակատար տապալման, բուրժուազիայի դիմադրության, նրա կողմից ռեստավրացիայի փորձերի լիակատար ճնշման նպատակով պրոլետարիատի և աշխատավորների բազմաթիվ ոչ-պրոլետարական շերտերի դասակարգային դաշինքի հատուկ ձևի՝ սոցիալիզմի վերջնական ստեղծման և ամրապնդման նպատակով կնքված դաշինքի և՛ էությունը, և՛ նպատակները (Երկեր, հատ. 29, էջ 465)։ Կապիտալիզմի վերականգնման վտանգի վերացումը նրա կարծիքով, նշանակում է հենց «պրոլետարիատի դիկտատուրայի դադարումն» (Երկեր, հատ. 33, էջ 99)։ Վ. Ի. Լենինը չի անցել «կոմունիստական հասարակարգի ապագա պետականության» վերաբերյալ Մարքսի գաղափարի կողքով, պետականություն, որը ծագում է այն ժամանակ, երբ պրոլետարիատի դիկտատուրան արդեն կատարած է լինում իր պատմական միսիան։

Սիստեմի վերածելով և զարգացնելով այդ առթիվ Մարքսի բոլոր հայացքները, Լենինը գրում է.

«Այսպիսո՞վ, նույնիսկ «կոմունիստական հասարա-



կարգում» կլինի պետականություն։ Արդյոք, այստեղ հակասություն չկա՞։

Ոչ.

I— կապիտալիստական հասարակարգում պետություն բուն իմաստով

II— Անցում (պրոլետարիատի դիկտատուրա). անցողական տիպի պետություն (պետություն ոչ բուն իմաստով).

III— կոմունիստական հասարակարգ. պետության մահացում

Լիակատա՞ր հետևողականություն և պարզություն։

Այլ կերպ՝

I— դեմոկրատիա միայն բացառության ձևով, երբեք ոչ լրիվ...

II— դեմոկրատիա գրեթե լիակատար՝ սահմանափակված միայն բուրժուազիայի դիմադրության ճնշմամբ

III— դեմոկրատիա իսկապես լիակատար, սովորություն դարձող ուստի և մահացող...» («Մարքսիզմը պետության մասին», ռուս. հրատ., էջ 53—55)։

Այս դատողության մեջ Լենինի կողմից նշված առաջին երկու ժամանակաշրջանները մեր երկրում արդեն պատկանում են պատմությանը։ Սովետական Միությունում ծագել ու զարգանում է համաժողովրդական պետությունը՝ կոմունիստական պետականությունը, կոմունիզմի առաջին փուլի պետականությունը։ Այդ նոր, կոմունիստական պետականությանն էլ հենց բախտ է վիճակվել աստիճանաբար վերաճելու կոմունիստական հասարակական ինքնավարության, և այդպիսի վերաճումն արդեն ոչ թե տեսական պրոգնոզ է, այլ այն է, ինչ տեղի է ունենում կենդանի սովետական իրականության մեջ։

Պրոլետարիատի դիկտատուրան սոցիալիզմին անցնելու պարտադիր պայմանն է, այն պետության ձևով անհրաժեշտ է սոցիալիզմի լիակատար ու վերջնական հաղթանակի համար, բայց իր ներքին զարգացման օրենքներով որոշակի փուլում՝ միանգամայն հասունացած սոցիալիզմի փուլում պրոլետարիատի դիկտատուրայի պետությունը դառնում է համաժողովրդական։ Իսկ համաժողովրդական պետությունը կարևորագույն ուղենիշ է սոցիալիստական պետականությունը կոմունիստական հասարակական ինքնավարության վերաճե-

լու ճանապարհին, առհասարակ պետության մահացման ճանապարհին:

Անզոր լինելով ըստ էության որևէ բան ապացուցելու, չինական «տեսաբանները» դիմում են այսպիսի հնացած փաստարկի: Նրանք պնդում են. «Բոլոր նրանց, ովքեր ունեն մարքսիզմ-լենինիզմի տարրական գիտելիքներ, հայտնի է, որ այսպես կոչված «համաժողովրդական պետությունը» ինչ որ նոր բան չէ: Բուրժուազիայի ներկայացուցիչները բուրժուական պետությունը միշտ անվանում են «համաժողովրդական պետություն» կամ «ժողովրդապետություն»:

Ի՞նչ խոսք, ուժեղ փաստարկ է: Եթե կոմունիստները հետևեին այս տրամաբանությանը, ապա պետք է սոցիալիզմից հրաժարվեին, որովհետև գոյություն ունեն բազմաթիվ զանազան հակամարքսիստական «սոցիալիստական» ուսմունքներ: Նրանք պետք է հրաժարվեին նաև այնպիսի լոզունգների իրականացումից, ինչպիսիք են ազատություն, հավասարություն, եղբայրություն, դեմոկրատիա. սոսկ այն պատճառով, որ այդ լոզունգները առաջ են քաշվել բուրժուական ռեվոլյուցիայի կողմից, այնուհետև խեղաթյուրվել ու գռեհկացվել են իշխանության գլուխ անցած բուրժուազիայի կողմից: Իսկ կոմունիստները, ընդհակառակը, այն կարծիքին են, որ այդ լոզունգներին պետք է վերադարձվի դրանց իսկական իմաստը, դրանք պետք է կենսագործվեն, իսկ այդ բանը կարելի է անել միայն սոցիալիզմի ու կոմունիզմի ճանապարհին: Այդպես է նաև համաժողովրդական պետության հարցը: Երբ դրա մասին խոսում էր Լասսալը կամ այժմ պնդում են իմպերիալիզմի գաղափարախոսները, մարքսիստներն արդարացիորեն պատասխանում են. դա ժողովրդին խաբել է: Համաժողովրդական պետություն կամ ամբողջ ժողովրդի պարտիա չի կարող լինել այն հասարակությունում, որը պառակտված է թշնամական դասակարգերի: Այլ բան է այն համաժողովրդական պետությունը, որն աճում է սոցիալիզմի լիակատար ու վերջնական հաղթանակով, կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը երկրի թևակոխումով իր պատմական միսիան ավարտած պրոլետարիատի դիկտատուրայից:

(Շարունակելի)

*(ՍՄԿՊ Կենտկոմի օրգան «Պարտիյնայա ժիզն» ամսագրի 1964 թ. 8-րդ համարից):*



ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

# ՍՍՌՄ ՕԴԱՅԻՆ ՆԱՎԱՏՈՐՄԻ ՕՐԸ

Ամեն տարի օգոստոսի 18-ին մեր երկիրը հանդիսավորությամբ նշում է ՍՍՌՄ օդային նավատորմի օրը: Սովետական օդային ավիացիայի պատմության մեջ շատ փառավոր էջեր են գրվել: Մեր ժողովրդի հիշողությունից երբեք չի մոռացվի սովետական անվեհեր օդաչուների անձնազոհ սխրանքները Հայրենական մեծ պատերազմի տարիներին: Հետպատերազմյան տարիներին հսկայական թափով զարգացել է սովետական ավիացիան: Այդ մասին են վկայում բարձրության և արագության, հեռավորության և բեռնատարողության գծով բազմաթիվ համաշխարհային ռեկորդները, որոնք նվաճել են ՍՍՌՄ օդաչուները: Այժմ Սովետական Միությունը օդային ուղիների երկարությամբ աշխարհում բռնում է առաջին տեղը: Մեր երկրի օդային ուղիների երկարությունը 400.000 կիլոմետրից ավելի է: Այժմ ՍՍՌՄ քաղաքացիական օդային նավատորմի ուղիներով թռիչքներ են կատարում սովետական փառաբանված ավիակոնստրուկտորներ Ա. Ն. Տուպոլևի, Ս. Վ. Իլյուշինի, Օ. Կ. Անտոնովի, Մ. Լ. Միլի և Ն. Ի. Կամովի ստեղծած Տու—104, Իլ—18, Ան—10, ՏՈՒ—114, ՏՈՒ—124, Ան—24 և այլ հիանալի արագընթաց մարդատար օդանավերը:

Յոթնամյակի սկզբին՝ 1958 թվականին, ռեակտիվ և տուրբոպտուտակավոր ինքնաթիռներով կատարված փոխադրումները կազմում էին Սովետական Միության բոլոր ավիափոխադրումների 17 տոկոսը, իսկ 1963 թվականին այդ տիպի ինքնաթիռներով փոխադրումների տեսակարար կշիռը հասավ 72,5 տոկոսի:

Վերջին տարիներին օդային տրանսպորտի զարգացման բնագավառում արմատական բեկում է տեղի ունեցել նաև մեր ռեսպուբլիկայում: Նշանակալի հաջողությունների է հասել ՍՍՌՄ-ի քաղաքացիական ավիացիայի հայկական առանձին ավիախումբը, որի օդային ուղիների երկարությունը կազմում է 22.521 կիլոմետր: 1964 թվականի անցած ամիսներին ավիախմբի օդանավերով փոխադրվել են 94 հազար ուղևոր:

Աստիճանաբար մեծանում են նաև օդային նավատորմով բեռների և փոստային փոխադրումները: Ռես-

պուբլիկայում օդային նավատորմով բեռնափոխադրումները 1963 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, ավելացել են մոտ 7 անգամ, իսկ փոստային փոխադրումները՝ ավելի քան 6 անգամ։ Սովետական Հայաստանի ավելի քան 40 ձեռնարկություններ տասնյակ տնտեսական շրջանների ձեռնարկությունների օդային նավատորմի միջոցով մատակարարում են ավելի քան 300 տեսակի արտադրանք։ Երկրի 30 տնտեսական շրջաններ մեր ռեսպուբլիկայի ձեռնարկություններին օդային տրանսպորտով մատակարարում են 270 տարբեր տեսակի արդյունաբերական արտադրանք։

Ամեն օր Երևանի օդանավակայանից տրանսպորտային ծանր ինքնաթիռները Սովետական Միության բազմաթիվ քաղաքներ են փոխադրում էլեկտրաշարժիչներ, էլեկտրաապարատներ, ճշգրիտ սարքեր, կոմպրեսորներ, արդյունաբերական տարբեր արտադրանք և գյուղատնտեսական մթերքներ։

Օդային նավատորմը ժողովրդական տնտեսության մեջ կատարում է բազմաթիվ այլ աշխատանքներ։ Այսպես կոչված հատուկ կիրառության ավիացիան գյուղատնտեսության մեջ կատարում է ավիացիոն քիմիական աշխատանքներ, սպասարկում է անտառային տնտեսությանը, կատարում է հիդրոմետեորոլոգիական ու սանիտարական ծառայություն, զբաղվում է օդային նկարահանումներով և այլն։ Դրանցից առանձնապես կարևոր նշանակություն ունեն գյուղատնտեսության մեջ ավիացիոն քիմիական աշխատանքները։ Այսպես, ուղղաթիռների և ինքնաթիռների օգնությամբ արդյունավետ պայքար է մղվում գյուղատնտեսական վնասատուների, հիվանդությունների դեմ, ոչնչացվում են մոլախոտերը, պարարտացվում է հողը։ Բավական է նշել, որ հենց քաղաքացիական ավիացիայի շնորհիվ է, որ մեր երկրում մեկընդմիշտ վերացվել է մորեխը։ Սովետական Միությանն է պատկանում այգիների ու դաշտերի վնասատուների դեմ պայքարի ավիացիոն մեթոդների մշակման առաջնությունը։

1963 թվականին մեր ավիախմբի ինքնաթիռներով մշակվել է ավելի քան 300 հազար հեկտար ցանքատարածություն, որը գրեթե չորս անգամ գերազանցում է 1961 թվականին կատարված աշխատանքները։

Հատուկ նպատակների համար կիրառվող ավիա-



էսկադրիլիայի օդաչուները, չնայած թռիչքային ծանր պայմաններին, 1963 թվականին պատվով կատարեցին ոչ միայն Սովետական Հայաստանի, այլև Կրասնոդարի, Ստավրոպոլի երկրամասերի, Նախիջևանի ավտոնոմ ռեսպուբլիկայի և մի շարք այլ շրջանների կոլտնտեսությունների ու սովխոզների դաշտերի և այգիների մշակման աշխատանքները։

Փառավոր ուղի է անցել մեր ավիախումբը։ Այն ստեղծվել է Հայաստանում սովետական կարգեր հաստատվելուց անմիջապես հետո։ Նրա անդրանիկ հրամանատարն էր անվանի օդաչու, քաղաքացիական կռիվների հերոս Արթուր Գուլյանը։ 1933 թվականին բացվեցին առաջին մարդատար ուղերթներ դեպի Թբիլիսի, Նոր-Բայազետ, (այժմ՝ Կամո) Սևան, Սիսիան և այլն։

1961 թվականից մեր ռեսպուբլիկայի թռիչքային ուղիներում գործում է «Իլ—18» հարմարավետ լայները, որի միջոցով ռեսպուբլիկայի աշխատավորները հնարավորություն ստացան մի քանի ժամի ընթացքում հասնել Մոսկվա, Լենինգրադ, Կիև, Օդեսա, Սիմֆերոպոլ, Խարկով, Ռոստով, Աշխաբադ, Գորկի, Թբիլիսի, Բաքու, Ադլեր և այլն։

Հայաստանի օդային ուղիներում իրենց բարեխիղճ աշխատանքով աչքի են ընկնում մեր ավիախմբի վետերաններ, Իլ—18 օդանավի հրամանատարներ Հ. Պարոնյանը, Մ. Պարաշկյանը, Շ. Սարգսյանը, Ն. Ջիլինգարյանը, երիտասարդ օդաչուներ Ռ. Բաղրամյանը, Է. Բախշինյանը, Հայաստանի հնագույն ավիամեխանիկներ Գ. Բուդանովը, Հ. Վարդանյանը և ուրիշներ։

Կենսագործելով ՍՄԿՊ XXII համագումարի որոշումները, պարտիայի ծրագիրը, սովետական ավիատորները իրենց բոլոր ուժերն ու եռանդը նվիրաբերում են հանուն սովետական մեծ երկրի հզորության, հանուն կոմունիզմի կառուցման։

Զ. ՊՈՂՈՍՅԱՆ

ՍՍՌՄ քաղաքացիական օդային նավատորմի հայկական առանձին ավիացիոն խմբի հրամանատարի տեղակալ

ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

# ԱԳԻՏԱՑԻԱՆ ՅԱՅԼԱՂՆԵՐՈՒՄ

*Ալպյան փարթամ բուսականություն ունեցող յայլաղներն են բարձրացել մեր ռեսպուբլիկայի հարյուրավոր կոլտնտեսությունների ու սովխոզների անասնապահական ֆերմաները։ Այս տարի ռեսպուբլիկայի անասնապահները վերցրել են նոր և բարձր պարտավորություններ՝ երկրին տալ 40 հազար տոննա միս, 338 հազար տոննա կաթ, 3,4 հազար տոննա բուրդ։ Յայլաղային շրջանը տարվա ավելի էժան անասնապահական մթերքներ ստանալու ժամանակն է։ Այդ շրջանում ավելի առատ է կերը, աննշան են անասունների պահպանության ծախսերը։ Յայլաղային շրջանի լավ անցկացումը տալիս է կաթի և մսի տարեկան արտադրության մեծ մասը։ Անիի և Արտաշատի արտադրական վարչությունների կոլտնտեսությունների զգալի մասը անասնապահական մթերքների տարվա արտադրության 55 տոկոսը ստանում են յայլաղային շրջանում։ Մարտունու արտադրական վարչության Վարդենիկի կոլտնտեսությունը յայլաղի ընթացքում է ստանում անասնապահական մթերքների արտադրության ավելի քան 65 տոկոսը։*

*Եվ այժմ գտնվելով յայլաղներում, մեր ռեսպուբլիկայի անասնապահները ջանք չեն խնայում սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունները պատվով կատարելու համար։ Այս տարի յայլաղներում աշխատում են մեծ թվով անասնապահներ, կթվորներ և անասնապահության բնագավառի շատ ուրիշ աշխատողներ։ Նրանց շրջանում քաղաքական-մասսայական և կուլտլուսավորական աշխատանքների կազմակերպման գործում հսկայական անելիքներ ունեն մեր ագիտատորները։ Յայլաղային շրջանում անասնապահների մեջ քաղաքական մասսայական աշխատանք կազմակերպելու դրական փորձ են ձեռք բերել Իջևանի, Գորիսի, Աշտարակի, Ստեփանավանի և մյուս արտադրական վարչությունների կոլտնտեսությունների պարտիական կազմակերպությունները։ Այդ գործում աչքի են ընկնում ագիտկուլտբրիգադները, որոնց մեջ ընդգրկված են գյուղատնտեսության մասնագետներ, ուսուցիչներ, բժիշկներ, կոլտնտեսային վարչության ղեկավար աշխատողներ, առաջավոր կոլտնտեսականներ։ Ագիտկուլտբրիգադների անդամները անասնապահների համար կազմակերպում են հետաքրքիր զրույցներ և դասախոսություններ։ Բասարգեչարի արտադրական վարչության պարտիական կոմիտեի դասախոսական խմբի անդամներ Կ. Ասլանովը, Մ. Սարգսյանը, Ն. Աբդուլազիմովը անասնապահների համար հաճախակի կազմակերպում են գյուղատնտեսության ինտենսիվացման հարցերի, շրջանի կոլտնտեսությունների նվաճումների, գիտության և տեխնիկայի նորությունների, միջազգային դրության, կոմունիստական և բանվորական շարժման հարցերի վերաբերյալ հետաքրքիր դասախոսություններ։ Արտաշատի արտադրական վարչության պարտկոմի ագիտկուլտբրիգադը հաճախակի անասնապահների համար կազմակերպում է անասնապահներին հետաքրքրող հարցերի վերաբերյալ հարց ու պատասխանի ժամեր։ Աշտարակի պարտկոմի ագիտբրիգադները ուսանելի փորձ են կուտակել նաև զրույցների կազմակերպման գործում։ Բյուրականի, Փարպիի, Բազմաղբյուրի կոլտնտեսությունների անասնապահների շրջանում կազմակերպվել են զրույցներ կլոր սեղանի շուրջ, որոնց մասնակցել են գիտնականներ, տեղի գյուղատնտեսության մասնագետներ։*

*Սիսիանի արտադրական վարչության Շաքիի, Բռնակոթի և մի շարք այլ տնտեսությունների յայլաղներում աշխատող անասնապահների համար բազմաթիվ հետաքրքիր միջոցառումներ է կազմակերպում շրջկենտրոնի կուլտուրայի տան ագիտկուլտբրիգադը։ Նրանց համար կազմակերպել է զրույց ՍՍՌՄ Գերագույն սովետի վեցերորդ գումարման 4-րդ սեսիայի նյութերի մասին։ Զրույցից հետո ելույթ է ունեցել կուլտուրայի տան երգի-պարի ինքնագործ խումբը։*

*Ամենօրյա ագիտացիան առաջին անհրաժեշտ պայմանն է անասնապահներին երկրի, ռեսպուբլիկայի, շրջանի կոլտնտեսության գործերին տեղյակ պահելու համար։ Իջևանի արտադրական վարչության Աչաջուր գյուղի յայլաղներում բովանդակալից ագիտացիոն աշխատանք է կազմակերպում Ա. Օթարյանը, Խաշթառակի անասնապահների շրջանում՝ Ս. Գյուլակյանը, Աշտարակի արտադրական վարչության Ագարակի ֆերմայի վարիչ Տ. Նավոյանը, Կարբիի անասնաբույժ Ս. Ավե-*

տիսյանը և մյուսները։ Նրանց անցկացրած վերջին պարապմունքները նվիրված էին ՍՍՌՄ Գերագույն սովետի սեսիայի նյութերին։

Այս տարի Իջևանի, Մարտունու, Սպիտակի արտադրական վարչություններում ագիտկոլտբրիգադներն ակտիվորեն նախապատրաստվում են բովանդակալից ձևով նշելու արդեն տրադիցիա դարձած անասնապահի օրը։ Կարևոր գործ է անասնապահներին իրենց աշխատանքին վերաբերող նորություններով զինելը. հատկապես պետք է կազմակերպել մասնագետների հաղորդումները՝ անասունների կերակրման, հիվանդությունների բուժման, արոտավայրերի արդյունավետ օգտագործման վերաբերյալ։ Անհրաժեշտ է հաղորդել երկրի, ռեսպուբլիկայի, իրենց կամ հարևան կոլտնտեսությունների առաջավոր անասնապահների կոմունիստական աշխատանքի համար պայքարող ֆերմաների, բրիգադների կամ կոլտնտեսությունների աշխատանքի առաջավոր փորձը։ Յայլաղային կերակրման շրջանում անասնապահության մեջ կենտրոնական դեմքը հանդիսանում է հովիվը։ Թե որքանով է նա կարողանում լավ կերակրել և պահպանել անասուններին, դրանից է կախված անասնապահական մթերքների ավելացումը։ Դրա համար անհրաժեշտ է լավագույն հովիվների, ինչպես օրինակ, Իջևանի արտադրական վարչության Սևքարի կոլտնտեսության առաջավոր հովիվ Վանիկ Քամալյանի, Բասարգեչարի արտադրական վարչության Ազիզլու գյուղի կոլտնտեսության հովիվ Բահման Նաջաֆովի, Հոկտեմբերյանի արտադրական վարչության Ալագյազ սովխոզի հովիվ Մնացական Առաքելյանի և ուրիշների առաջավոր փորձը դարձնել բոլորի սեփականությունը։

Չափազանց օգտակար են անասնապահների մոտ գեղարվեստական կոլեկտիվների, արվեստի և գրականության աշխատողների այցելությունները։ Այս ուղղությամբ խրախուսելի աշխատանք է կատարում Գորիսի ժողովրդական թատրոնի կոլեկտիվը։ Վերջերս թատրոնը Ալ. Շիրվանզադեի «Չար ոգի» պիեսի բեմադրությամբ հանդես եկավ Խնածախ, Խնձորեսկ, Կոռնիձոր, Քարաշեն, Շինուհայր, Տեղ և այլ գյուղերի տնտեսությունների արոտավայրերում։

Սևանի արտադրական վարչության բոլոր կոլտնտեսություններում «Սարվորի օրվա» կապակցությամբ



կազմակերպվեցին կոլտնտեսությունների և սովխոզների ինքնագործ խմբերի ելույթներ, և մինչև ուշ երեկո Գեղամա լեռների լանջերին հնչում էր նվագն ու երգը։ Այժմ ամենուրեք ագիտկոլտբրիգադները կազմակերպում են գեղարվեստական և գիտահանրամատչելի կինոնկարների ցուցադրումներ, ժամանակին անասնապահներին են հասցնում թարմ թերթեր, ամսագրեր, գրքեր։

Իջևանի ագիտկոլտբրիգադներն անասնապահներին օգնում են նաև առօրյա աշխատանքում, որտեղ օրվա առանձին ժամերին զգացվում է աշխատանքի մեծ ծանրաբեռնվածություն։ Շատ տեղերում ագիտկոլտբրիգադները հոգատարություն են ցուցաբերում անասնապահներին արդյունաբերական ապրանքներ մատակարարելու, դեղորայքի և այլ միջոցների հայթայթման գործում։

Ագիտկոլտբրիգադները պետք է հաճախակի լույս ընծայեն անասնապահների կյանքին վերաբերող պատի թերթեր, ֆոտոստենդներ։ Ինչպես պատի թերթերում, այնպես էլ զրույցների ժամանակ որոշակի տեղ պետք է հատկացնել աշխատանքի առաջավոր մեթոդների լուսաբանմանը։ Արտաշատի արտադրական վարչության պարտկոմը կազմակերպել է ագիտվրան, որը յուրահատուկ կարմիր անկյուն է և այն պարբերաբար շրջում է բոլոր կոլտնտեսությունների յայլաղները։

Յայլաղներում գտնվող անասնապահների համար պետք է ստեղծել կուլտուր-կենցաղային բոլոր պայմանները, կազմակերպել բժշկական օգնություն, նրանց ապահովել անհրաժեշտ արդյունաբերական ապրանքներով և այլն։ Շրջկոոպները, գյուղկոոպները, բուժմիավորումները պետք է անեն ամեն ինչ՝ յայլաղներում անասնապահների կարիքները բավարարելու համար։

Ամենօրյա քաղաքական-մասսայական աշխատանքների կազմակերպումը, անասնապահների կուլտուր-կենցաղային պայմանների բարելավումը այն կարևոր խնդիրներից են, որոնք նպաստելու են ստանձնած բարձր պարտավորությունների կատարմանը։

ԳՐ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

# ՋՐՈՒՅՑ ՆՈՐ ՏՈՆԵՐԻ ՈՒ ՍՈՎՈՐՈՒՅԹՆԵՐԻ ՄԱՍԻՆ

*Սովետական իշխանության տարիներին արմատապես փոխվել է մեր երկրի ժողովուրդների ապրելակերպը: Սոցիալիստական հարաբերություններն ու կոմունիստական գաղափարախոսությունը դրսևորվել են նաև կենցաղում: Ձևավորվել ու զարգանում են մի շարք նոր տրադիցիաներ ու սովորույթներ, որոնք ծնվել են սոցիալիստական կյանքում: Սակայն այդ բոլորի կողքին մարդկանց կենցաղը այն բնագավառն է, որտեղ իրենց դեռևս զգացնել են տալիս անցյալի մնացուկները, վաղուց արդեն իրենց դարն ապրած սովորույթներն ու բարքերը: Ընդ որում կենցաղն այն բնագավառն է, որտեղ առանձնապես զգալի է կրոնի ու եկեղեցու ազդեցությունը: Եվ դա հասկանալի է: Նախկինում եկեղեցին իր գործողության ոլորտի մեջ էր ներառել մարդկանց ամբողջ կենցաղը, կենցաղային բոլոր հիմնական իրադարձություններին տվել էր կրոնական գունավորում: Կյանքի այնպիսի կարևոր կողմը, ինչպիսին մարդկային գործունեության և բնության երևույթների որոշակի կապը դրսևորող ժողովրդական տոնակատարությունները՝ նոր տարվա սկիզբը, բնության գարնանային զարթոնքն ու գյուղատնտեսական աշխատանքների սկսվելը, բերքի հասունացումն և այլն վերածվել էին կրոնական տոների: Միանգամայն երկրային, մարդկանց արտադրական գործունեության հետ կապված երևույթները կրոնի կողմից ստացել են գերբնական երանգ, կապվել առասպելական, երևակայական դեմքերի ու դեպքերի հետ և դարեր շարունակ պրոպագանդվել ու ամրացել կենցաղում:*

*Այժմ մարդկանց կենցաղի մեջ են մտել բոլորովին նոր տոներ ու տրադիցիաներ: Սովետական ժողովուրդն ամեն տարի մեծ հանդիսավորությամբ նշում է այնպիսի կարևոր իրադարձությունների տարեդարձը, ինչպես Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի հաղթանակը, պրոլետարիատի միջազգային համերաշխության օրը՝ մայիսի մեկը, աշխատավոր կանանց օրը՝ մարտի ութը, սահմանադրության ընդունման օրը՝*



*դեկտեմբերի 5-ը, մեծ Լենինի ծննդյան տարեդարձը, Սովետական բանակի կազմակերպման օրը, ավիացիայի, ֆիզկուլտուրնիկների, հանքագործների, շինարարների տոները և այլն: Այս տոները կապվում են ոչ թե ինչ-որ առասպելական, գերբնական երևույթների հետ, ոչ թե նվաստացնում ու ճնշում են մարդկանց, ինչպես եկեղեցական տոները, որոնք ուղեկցվում են պասերով ու աղոթքներով, այլ նշում են աշխատանքի ու մարդու ազատագրման փաստերը, փառաբանում մարդկային ստեղծագործ հանճարն ու բարձրացնում աշխատավոր մարդուն: Այդ տոների մի մասը միջազգային տոներ են և նշվում են ամբողջ աշխարհի աշխատավորների կողմից (մայիսի 1-ը, մարտի 8-ը, Հոկտեմբերյան ռևոլյուցիայի տարեդարձը), մյուսները նշվում են մեր Միության սահմաններում:*

*Սովետական իշխանության տարիներին, հատկապես վերջին շրջանում մշակվել են նաև նոր տոներ, որոնք մեծ դեր են կատարում երիտասարդության կոմունիստական դաստիարակության, նրա բարոյական ու գեղագիտական ըմբռնումների ձևավորման գործում: Դրանց թվին են պատկանում պարբերաբար անցկացվող երգի տոները, պատանիների հասունության (18 տարին լրանալու), առաջին աշխատավարձ ստանալու տոնը և այլն: Հասկանալի է, որ նման տոներն ունեն ոչ թե համամիութենական և ոչ էլ նույնիսկ հանրապետական, այլ կոնկրետ տեղական բնույթ, այսինքն՝ նշվում են այս կամ այն մարզի, քաղաքի կամ շրջանի մասշտաբով: Վերջին տարիներին այդ տոների լայն մասսայականությունը (ինչպես, օրինակ, երգի տոնը Հայաստանում) ցույց է տալիս, որ նրանք մեր կենցաղում, հատկապես երիտասարդության դաստիարակության բնագավառում կարևոր դեր են կատարում: Միաժամանակ կյանքը ցույց է տալիս, որ որոշ տեղերում այս նոր տոները երբեմն վերածվում են ձանձրալի հավաքույթների, ուղեկցվում են երկար-բարակ ճառերով և այսպիսով նոր սկսած լավ տրադիցիան վարկաբեկվում է:*

*Նման փաստերը խոսում են այն մասին, որ անհրաժեշտ է ընդհանրացնել տեղական տոների կազմակերպման փորձը և մշակել մի ինչ-որ միասնական կարգ: Ընդ որում նոր տոների մշակման ժամանակ հարկավոր*

*է հաշվի առնել մեր ժողովրդի դարավոր տրադիցիաները և եկեղեցու ձեռքից խլել նրա վերջին զենքերից մեկը ևս՝ ժողովրդական տրադիցիաների վերածումը կրոնական տոնակատարությունների։ Այդպիսի մի հաջող փորձ մենք արդեն ունենք—դա նոր տարվա նշումն է։ Հիմա համարյա ոչ ոք, մասնավորապես երիտասարդությունը, նոր տարին չի կապում ինչ-որ Քրիստոսի ծննդյան հետ, այլ տոնում է որպես անցած տարվա ամփոփում և նոր տարին ուրախությամբ ու հետաքրքիր նշելու օր։ Եթե մենք նույնպես կազմակերպված ձևով օգտագործենք, օրինակ, ծաղկազարդի նշումը, վերականգնելով ծաղկե պսակներով զարդարված զբոսանքի, ջան գյուլում անելու սովորույթը, ստեղծելով նոր, մեր իրականությանը համապատասխան երգեր, ամռան վերջին կամ աշնան սկզբին բերքահավաքը (բերքի հասունացումը) ավանդական տրնդեզով (կամ գուցե վարդավառով) նշելու սովորույթը, ապա կկարողանանք չեզոքացնել համբարձման ու աստվածածնի տոների պահպանվող մնացուկները և զգալի թվով հավատացյալների հեռացնել կրոնական սնահավատությունների պաշտամունքից, ավելի լավ հաղթահարել կրոնական մնացուկները։*

*Վերջին տարիներս ամբողջ Միության մեջ սկզբնավորվել են մի շարք նոր կենցաղային սովորույթներ, որոնք օգնում են երիտասարդ սերնդի կոմունիստական դաստիարակությանը, ավելի հետաքրքիր ու հաճելի են դարձնում մարդկանց կյանքը։ Դրանցից մեկը առաջին անձնագրերի հանձնումն է պատանիներին։ Ընդ որում անձնագրերը տրվում են ոչ թե միլիցիայի բաժանմունքում, այլ հանդիսավոր պայմաններում. ամեն մի պատանու անձնագիր է հանձնում մի որևէ վաստակավոր մարդ՝ արտադրության առաջավոր բանվոր, ականավոր գիտնական, բժիշկ, վաստակավոր ինժեներ կամ ուսուցիչ և այլն։ Նա ոչ միայն պարզապես անձնագիր է հանձնում, այլ զրուցում է պատանու հետ, նրան խորհուրդներ տալիս, մաղթում պատվավոր գործունեություն։ Այսպիսի արարողությունը երիտասարդ և հասուն սերունդների կապի ամրապնդման նոր ձև է, որը տպավորվում է երիտասարդների հիշողության մեջ, որոշակի դեր խաղում նրանց հետագա կյանքի համար։*

*Մի այլ նոր, լավ սովորույթ է երիտասարդ զույգի*



*ամուսնության կամ զավակ ծնվելու դեպքում հասարակական այգիներում առանձնացված ծառուղիներում ծառ տնկելը։ Վերջերս լայն տարածում են գտել նաև այսպես կոչված կոմերիտական հարսանիքները։*

*Սակայն ճիշտ չէր լինի կարծել, թե այս նոր սովորույթներն իրենքիրենց, ինքնահոսի կարգով կարմատավորվեն կյանքում, և, որ արդեն անհրաժեշտություն չկա պայքարելու հին սովորույթների ու ծեսերի դեմ։ Հին սովորույթները կյանքում այս կամ այն չափով պահպանվում են և, եթե նրանց դեմ ակտիվ պայքար չի մղվում, խանգարում են մեր կյանքին, արմատացնում մեր հասարակությանը խորթ ըմբռնումներ։ Սա ամենևին էլ չի նշանակում, թե պետք է դեն նետել մեր ժողովրդի դարերով մշակած բոլոր սովորույթներն ու ծեսերը։ Պետք է վերցնել դրանցից դրականը, առողջը, բանականը և դեն գցել այն հետադիմական տարրերը, որ այդ սովորույթների մեջ մտցրել են շահագործող դասակարգերն ու եկեղեցին։*

*Այժմ մեր ռեսպուբլիկայում խոշոր աշխատանք է տարվում նոր տոների, նոր ծեսերի ու սովորույթների մշակման ու կյանքում արմատավորման ուղղությամբ։ Այդ աշխատանքը ղեկավարում են պարտիական օրգանները, որովհետև դա նոր մարդու, կոմունիստական հասարակարգ կառուցողի դաստիարակության կարևոր բաղկացուցիչ մասերից մեկն է։ Սակայն այդ գործի հաջողությունը շատ փոքր կլինի, եթե մեր պարտիականներն ու կոմերիտականներն անմիջականորեն չմասնակցեն դրան, չցուցաբերեն նախաձեռնություն և հաստատակամություն հին, իրենց դարն ապրած տոների ու սովորույթների դեմ պայքարելու գործում։ Այնինչ, ոմանք ոչ միայն չեն պայքարում այդ հին սովորույթների դեմ, այլև տեղի են տալիս՝ ելնելով այն կեղծ մտայնությունից, որ կվիրավորեն բարեկամների զգացմունքները։ Պետք է դեն նետել այդ մտավախությունը, անհաշտ լինել հնի մնացուկների նկատմամբ, չզոհել համոզմունքը բարեկամների զգացմունքներին։ Կոմունիստն ու կոմերիտականը միշտ պետք է անձնական օրինակ ցույց տան այդ գործում, իրենք կիրառեն նորը և բացահայտ դուրս գան հնի դեմ։*

*Մ. ՄԵԼԻՔՅԱՆ*

Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

# ՍՍՌՄ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՓԱՅԼՈՒՆ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

(Թվեր և փաստեր)

Ընթացիկ տարվա առաջին կիսամյակում մեր երկրի աշխատավորները նոր և փայլուն հաջողություններ ձեռք բերեցին ժողովրդական տնտեսության զարգացման բնագավառում: Շարունակվում է յոթնամյակի հաղթական երթը մեր կյանքի բոլոր բնագավառներում: Ահա թվեր և փաստեր այդ մասին:

☆ *Անցած կիսամյակում արդյունաբերության արտադրանքի աճը կազմել է մոտ յոթ և կես տոկոս, գերակատարված է կիսամյա պլանը:*

☆ *Նույն ժամանակամիջոցում քիմիական արդյունաբերության արտադրանքը ավելացել է 14 տոկոսով, սև և գունավոր մետալուրգիայինը՝ 8, էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ 11, մեքենաշինությանը՝ 11, շինանյութերինը՝ 10, թեթև և սննդի արդյունաբերությանը՝ 2 տոկոսով և այլն:*

☆ *Այս տարվա անցած վեց ամսում յուրացվել է արտադրանքի մոտ 500 նոր տեսակների արտադրություն և միաժամանակ արտադրությունից հանվել է հնացած կոնստրուկցիայի սարքավորման գրեթե 200 տեսակ:*

☆ *Նույն ժամանակամիջոցում ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության մեջ արմատավորվել է մոտ մեկ միլիոն 400 հազար առաջարկություն, որը տարեկան տալիս է գրեթե 800 միլիոն ռուբլու խնայողություն:*

☆ *Վեց ամսում արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 4 տոկոսով:*

☆ *Ամբողջ ժողովրդական տնտեսության մեջ, ընթացիկ տարվա առաջին կիսամյակում, ստացվել է 8 տոկոս շահույթ, իսկ արդյունաբերության մեջ՝ 10 տոկոսով ավելի, քան անցյալ տարվա համապատասխան ժամանակամիջոցում:*

☆ *Կիսամյակում արտադրվել է 11 միլիոն 648 հազար տոննա հանքային պարարտանյութ: Նույն ժամանակամիջոցում արտադրվել են 39,6 հազար տոննա բույսերի պաշտպանության և վնասատուների դեմ պայքարի քիմիական միջոցներ:*



☆ *Խոշոր հաջողություններ են ձեռք բերվել նաև քիմիական արդյունաբերության մյուս բնագավառներում: Միայն անցած վեց ամսում արտադրվել է 346 հազար տոննա սինթետիկ ձյութ ու պըլաստմասսա, 173 հազար տոննա արհեստական ու սինթետիկ թել, 557 հազար տոննա կաուստիկ սոդա, մեկ միլիոն 342 հազար տոննա կալցիացված սոդա, 3 միլիոն 756 հազար տոննա ծծմբաթթու:*

☆ *Սովետական պանծալի մետալուրգները անցած կիսամյակում երկրին տվել են 30,6 միլիոն տոննա չուգուն, 41,9 միլիոն տոննա պողպատ, 33 միլիոն տոննա գլանվածք. 640 միլիոն մետր պողպատե խողովակ: Նույն ժամանակամիջոցում արտադրվել է 71,2 միլիոն տոննա երկաթի հանքաքար:*

☆ *Մեծ են հաջողությունները երկրի ընդերքի օգտագործման և էլեկտրաէներգիայի արտադրության բնագավառներում: Առաջին կիսամյակում արդյունահանվել է 109 միլիոն տոննա նավթ, 53,6 միլիարդ խորանարդ մետր գազ, 273 միլիոն տոննա ածուխ: Նույն ժամանակամիջոցում արտադրվել է 223 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա:*

☆ *Աննախընթաց հաջողությունների են հասել մեր երկրի մեքենաշինության աշխատողները: Անցած կիսամյակում արտադրվել է 5,8 միլիոն կիլովատ տուրբինի գեներատոր՝ 5,7 միլիոն կիլովատ տուրբին, 14,4 միլիոն կիլովատ փոփոխական հոսանքի էլեկտրաշարժիչներ, 89,4 հազար հատ մետաղահատ հաստոց, 17,2 հազար հատ դարբնոցամամլակային մեքենաներ, 905 միլիոն ռուբլու սարք:*

★ *Մեր երկրում անընդհատ ավելանում են տրանսպորտային միջոցները: Միայն անցած վեց ամսում արտադրվել են 768 սեկցիա մագիստրալային ջերմաքարշեր, 331 հատ մագիստրալային էլեկտրաքարշեր, 302 հազար հատ ավտոմոբիլ, 12 միլիոն հատ ավտոդող:*

☆ *Անցած կիսամյակում մեր երկրի գյուղատնտեսությանը նորից մատակարարվեց ժամանակակից տեխնիկա: Վեց ամսում կոլտնտեսություններն ու սովխոզներն ստացել են 106 հազար տրակտոր (ֆիզմիավոր), 682 միլիոն ռուբլու գյուղատնտեսական մեքենաներ, 37 հազար բեռնատար ավտոմեքենա, 37 հազար հացահատիկահավաք, 9 հազար ճակնդեղահավաք, 25 հազար սիլոսահավաք կոմբայններ և այլն:*

☆ *Նույն կիսամյակում արտադրվել է 3 հազար հատ բամբակահավաք մեքենա. 8,4 հազար հատ հացահատիկացտիչ մեքենա, 103 հազար հատ տրակտորի շարքացան, 87,1 հազար հատ տրակտորի կուլտիվատոր, 55,8 հազար հատ տրակտորի հնձիչ և այլն:*

☆ *Տարեցտարի երկրում ավելանում է շինանյութերի արտադրությունը: Անցած վեց ամսում 142 միլիոն խորանարդ մետր շինափայտ է առբերվել (առանց կոլտնտեսությունների անտառահատման), արտադրվել է 31,3 միլիոն տոննա ցեմենտ, 23,5 միլիոն*

խորանարդ մետր հավաքովի երկաթբետոնե կոնստրուկցիա, 2 միլիարդ պայմանական սալ շիֆեր, 487 միլիոն քառակուսի մետր փափուկ ծածկ, 97,8 միլիոն քառակուսի մետր լուսամուտի ապակի և այլն։

☆ Այս տարվա առաջին կիսամյակում աչքի ընկնող հաջողությունների հասան գյուղատնտեսության աշխատողները։ Անցյալ տարվա համեմատությամբ ցորենի ցանքատարածությունն ընդարձակվել է ավելի քան 3 միլիոն հեկտարով, հատիկալոբազգիներինը՝ 271 հազար հեկտարով և այլն։

☆ Այս տարվա հուլիսի մեկի տվյալներով երկրում կա 66 միլիոն գլուխ խոշոր եղջերավոր անասուն, այդ թվում 22,6 միլիոն կով։

☆ 1964 թվականի առաջին կիսամյակում արտադրվել է 2 միլիարդ 646 միլիոն քառակուսի մետր բամբակե գործվածք, 229 միլիոն քառակուսի մետր բրդի գործվածք, 274 միլիոն քառակուսի մետր վուշի գործվածք, 408 միլիոն քառակուսի մետր մետաքսե գործվածք։

☆ Արտադրվել է նաև տրիկոտաժե սպիտակեղեն՝ 309 միլիոն հատ, տրիկոտաժե վերնազգեստ՝ 74 միլիոն հատ, կաշվե կոշիկ՝ 237 միլիոն զույգ։

☆ Կիսամյակում զգալիորեն ավելացել է նաև սննդամթերքների արտադրությունը։ Արտադրվել է միս (առանց կոլտնտեսությունների արտադրության և բնակչության տնային արտադրության)՝ 1,4 միլիոն տոննա, երշիկ՝ 715 հազար տոննա, յուղ (առանց կոլտնտեսությունների արտադրության և բնակչության տնային արտադրության)՝ 325 հազար տոննա, անարատ կաթնամթերք՝ կաթի վերածած՝ 5 միլիոն տոննա, պանիր՝ 106 հազար տոննա, ձեթ՝ 1,1 միլիոն տոննա, հրուշակեղեն՝ 1,2 միլիոն տոննա, պահածո՝ 2,1 միլիարդ տուփ, օճառ՝ 991 հազար տոննա։

☆ Առաջին կիսամյակում բանվորների ու ծառայողների թիվը կազմել է միջին հաշվով 71,4 միլիոն և աճել է 2,4 միլիոնով։

☆ Բնակչությունը սպառման հանրային ֆոնդերից (ձրի ուսուցում, բուժսպասարկում, կենսաթոշակներ, նպաստներ և այլն) ստացել է 17,8 միլիարդ ռուբլի կամ 6 տոկոսով ավելի, քան անցյալ տարվա համապատասխան շրջանում։

☆ Կիսամյակում բնակչությանը վաճառվել է անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ հացամթերք՝ 101, միս, երշիկ և այլ մսամթերք՝ 102, յուղ՝ 107, ձեթ՝ 113, կաթ և կաթնամթերք՝ 106, շաքար՝ 106, հրուշակեղեն՝ 117, թեյ՝ 110, կարտոֆիլ՝ 114, մրգեղեն՝ 120, ցիտրուսային կուլտուրաներ՝ 108 տոկոսով։

☆ Բնակչությանը այդ նույն ժամանակամիջոցում վաճառվել է նաև հագուստեղեն և սպիտակեղեն՝ 101 տոկոս, տրիկոտաժեղեն՝ 110, գուլպեղեն՝ 114, փոշեծծիչ՝ 110, ռադիոընդունիչ և ռադիոլ՝ 105, հեռուստացույց՝ 121, մարդատար ավտոմեքենա՝ 103 տոկոս և այլն։

☆ Մեր երկրում ուսուցման տարբեր ձևերում ընդգրկված է մոտ 65 միլիոն մարդ, այդ թվում ավելի քան 52 միլիոն մարդ սովորում է հանրակրթական դպրոցներում, բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում, պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության ուսումնարաններում ու դպրոցներում և գրեթե 13 միլիոն մարդ ընդգրկված է ուսուցման մյուս ձևերում։

☆ Կիսամյակում հանրակրթական դպրոցներում եղել է մոտ 45 միլիոն սովորող, որոնցից ավելի քան 4 միլիոնը, արտադրությունից չկտրված, սովորում է բանվորի և գյուղերի դպրոցներում։

☆ Գիշերօթիկ դպրոցներում, երկարօրյա դպրոցներում ու խմբերում եղել է 2,4 միլիոն աշակերտ։

★ Երկրի բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորում է 3,3 միլիոն ուսանող, կամ 317 հազարով ավելի, քան անցյալ տարի, միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում՝ մոտ 3 միլիոն մարդ, կամ 315 հազարով ավելի։

☆ Ընթացիկ տարում բարձրագույն ուսումնական հաստատությունները կտան մոտ 350 հազար մասնագետ, միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունները՝ գրեթե 550 հազար։ Մեկ տարում երկրի ժողովրդական տնտեսությունը կստանա բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթությամբ 900 հազար մասնագետ։

☆ Գնալով ավելի լայն զարգացում են ստանում ժողովրդական համալսարանները։ 1964 թվականի մարտի 1-ի դրությամբ երկրում կա 9.626 ժողովրդական համալսարան՝ 2 միլիոն ունկնդիրներով։

☆ Երկրում կինոսարքերի թիվը ավելացել է 3 հազարով և հուլիսի 1-ի դրությամբ կազմում էր ավելի քան 134 հազար։ Կիսամյակում կինոհաճախումների թիվը կազմել է ավելի քան երկու միլիարդ։

☆ Պետական միջոցների, ինչպես նաև կոոպերատիվ միջոցների հաշվին 1964 թվականի առաջին կիսամյակում շահագործման է հանձնվել մոտ 19,5 միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն, կամ 490 հազար բարեկարգ նոր բնակարան։

☆ Սովետական Միության բնակչության թիվը առ 1964 թվականի հուլիսի 1-ը կազմում էր մոտ 228 միլիոն։

Մեր երկրի բոլոր աշխատավորները չեն հանգստանում ձեռք բերված հաջողություններով: Նրանք այժմ ավելի եռանդով են աշխատում՝ ՍՄԿՊ-ի ծրագիրը պատվով կենսագործելու համար:

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Լենինյան հոգատարություն սովետական ժողովրդի նկատմամբ

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*— Ժողովրդի բարեկեցության բարձրացման բնագավառում ՍՄԿՊ ծրագրի կատարման միջոցառումների մասին, *զեկուցում ՍՍՌՄ Գերագույն սովետի վեցերորդ գումարման չորրորդ սեսիայում, 1964 թվականի հուլիսի 19-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հուլիսի 14-ի և 15-ի համարներում։*

Օրենք ՍՍՌՄ կոլտնտեսությունների անդամների կենսաթոշակների, նպաստների մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հուլիսի 16-ի համարում։*

Օրենք ՍՍՌՄ լուսավորության, առողջապահության, բնակարանային-կոմունալ տնտեսության, առևտրի և հասարակական սննդի և բնակչությանը անմիջականորեն սպասարկող ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի աշխատողների աշխատավարձը բարձրացնելու մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հուլիսի 16-ի համարում։*

*Ա. ՔՈՉԻՆՅԱՆ*— Ճառ, արտասանած՝ ՍՍՌՄ վեցերորդ գումարման Գերագույն սովետի չորրորդ սեսիայում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հուլիսի 16-ի համարում։*

*Ս. ԱՌԱՔԵԼՅԱՆ*— Ճառ, արտասանած ՍՍՌՄ վեցերորդ գումարման Գերագույն սովետի չորրորդ սեսիայում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հուլիսի 17-ի համարում։*

## 2. Բարձր պահել պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*— Ճառ, արտասանած 1964 թվականի հուլիսի 21-ին Վարշավայում կայացած հանդիսավոր նիստում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հուլիսի 22-ի համարում։*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*— Եղբայրություն, միասնություն, հավատարմություն մարքսիզմ-լենինիզմին. ճառ, արտասանած սովետա-լեհական բարեկամության միտինգում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի ապրիլի 16-ի համարում։*

Միջազգային կոմունիստական շարժման համախմբվածության







համար ՍՄԿՊ-ի պայքարի մասին, *ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի ապրիլի 4-ի համարում։*

*Մ. Ա. ՍՈՒՍԼՈՎ*— Միջազգային կոմունիստական շարժման համախմբվածության համար ՍՄԿՊ-ի պայքարի մասին, *զեկուցում ՍՄԿՊ Կենտկոմի փետրվարյան պլենումում, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի ապրիլի 4-ի համարում։*

## 3. Անկորուստ հավաքենք հանրային դաշտերի բերքն ու բարիքը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Կազմակերպված անցկացնել խոտհունձն ու սիլոսացումը, *ՀԿՊ Կենտկոմի և Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի որոշումը, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հուլիսի 11-ի համարում։*

Հաջող կազմակերպել բերքահավաքը և մթերումները, *ՀԿՊ Կենտկոմի և Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի որոշումը, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հուլիսի 12-ի համարում։*

Արշավի ելնենք բերքահավաքն ու կերի կուտակումը հաջող անցկացնելու համար, *նյութեր տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հուլիսի 18-ի համարում։*

Մեխանիզատորների պատվի գործը, *«Ս. Հ.»-ի 1964 թվականի հուլիսի 21-ի առաջնորդողը։*

*Հ. ՂՈՒՇՉՅԱՆ*— Ամենից հրատապը, անհետաձգելին, *հոդված, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հուլիսի 28-ի համարում։*

Հավասարվել բերքահավաքի ու կերի կուտակման առաջավորներին, *նյութեր, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հուլիսի 23-ի համարում։*

## 4. ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման նոր հաջողությունները

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՍՌՄ Մինիստրների սովետին առընթեր կենտրոնական վիճակագրական վարչության հաղորդագրությունը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հուլիսի 23-ի համարում։*

Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետին առընթեր կենտրոնական վիճակագրական վարչության հաղորդագրությունը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հուլիսի 26-ի համարում։*

Վերելքի ուղիով, *«Ս. Հ.»-ի 1964 թվականի հուլիսի 28-ի առաջնորդողը։*

---

ԻՆԴԵՔՍ՝ 77704

ОТДЕЛ ИДЕОЛОГИЧЕСКОЙ РАБОТЫ
ЦК КП АРМЕНИИ

# Агитатори блокнот

## № 15

## 1964

Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

*ՎՖ 08365* *Պատվեր 601* *Տիրաժ 8984*

*Հանձնված է արտադրության 27/VII 1964 թ.։*
*Ստորագրված է տպագրության 3/VIII 1964 թ.։*

*ՀՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության II տպարան,*

*Երևան, Կնունյանցի № 8։*

*Գինը 8 կոպ.։*